Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 8 ԱՊՐԻԼ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՄԱՅԻՍԻ 1-Ը ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

Մայիսի 1-ը՝ աշխատավորների միջազգային պրոլետարական համերաշխության օրն է, բոլոր երկրների բանվորների եղբայրության և նրանց մարտական ուժերի ստուգատեսի օրը։

Մայիսի 1-ը առաջին անգամ տոնվել է 1890 թվականին Անգլիայում, Գերմանիայում, Ֆրանսիայում, Բելգիայում և այլ երկրներում։ Ռուսաստանում այն առաջին անգամ տոնվել է 1891 թվականին։

Այդ ժամանակվանից սկսած ամեն տարի մայիսի 1-ին ամբողջ աշխարհի աշխատավորները միասնական, կուռ շարքերով, ալ դրոշներով, մարտական լոզունգներով ու ռևոլյուցիոն երգերով դուրս են գալիս փողոց, ցուցադրում իրենց անսասան վճռականությունը պայքարելու պատերազմի սպառնալիքի դեմ, հանուն կայուն խաղաղության և

ժողովուրդների անկախության պաշտպանման, հանուն դեմոկրատիայի ու սոցիալիզմի։

***

Սովետական ժողովրդի համար մայիսի 1-ը խաղաղ, ստեղծագործական աշխատանքի մեծագույն տոն է։ Այս տարի մայիսմեկյան տոնակատարությունը համընկնում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի նախապատրաստության հետ։ Մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր անկյուններից ամեն օր ուրախալի լուրեր են ստացվում Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական մրցության մասին, պետական առաջադրանքների կատարման ասպարեզում աշխատավորների ձեռք բերած հաջողությունների մասին։

Ինչպես միշտ, այնպես էլ այս տարի մայիսմեկյան տոնը մեր երկրի աշխատավորները դիմավորում են սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, խաղաղության պահպանման համար անխոնջ պայքարի իրադրության մեջ։

Սովետական Միության աշխատավորները



զինված ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներով անձնվիրաբար պայքարում են 6-րդ հնգամյա պլանի հաջող իրականացման համար, անշեղորեն առաջ ընթանալով կոմունիստական հասարակարգի կառուցման ուղիով։

Սովետական մարդկանց առանձնապես ուրախացնում են մեր երկրի արդյունաբերության աշխատողների հաջողությունները։

Եթե աշխարհի գլխավոր կապիտալիստական երկրների համար ավելի քան 100 տարի պահանջվեց, որ ստեղծեին իրենց խոշոր արդյունաբերությունը, ապա ՍՍՌՄ-ի բանվոր դասակարգը, մեր երկրի բոլոր աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կարճ ժամկետում ստեղծեցին խոշոր, տեխնիկապես առաջնակարգ սոցիալիստական արդյունաբերություն։

Մինչև 1957 թվականը ՍՍՌՄ-ում արդյունաբերությունը նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է ավելի քան 30 անգամ, իսկ ծանր ինդուստրիան ավելի քան 50 անգամ։ Արտադրության միջոցների արտադրությունը 1960 թվականին 1928 թվականի համեմատությամբ ավելանալու է 66 անգամ, սպառման միջոցներինը՝ 14 անգամ։ Արդյունաբերական արտադրության

բացարձակ չափերով ՍՍՌՄ-ը արդեն շատ
ու շատ առաջ է անցել Եվրոպայի առավել
զարգացած կապիտալիստական բոլոր եր-
կրներից և գրավում է երկրորդ տեղը աշ-
խարհում։ ՍՍՌՄ-ը ձուլում է ավելի շատ չու-
գուն, ալյումին, պղինձ, արտադրում է ավելի
շատ էլեկտրաէներգիա, մեքենաներ, ցեմենտ,
ածուխ, քան Անգլիան, Արևմտյան Գերմա-
նիան, Ֆրանսիան։ ՍՍՌՄ-ում 1955 թվակա-
նին ձուլվել է այնքան չուգուն, որքան Անգ-
լիայում, Ֆրանսիայում, Բելգիայում, Իտա-
լիայում, Ավստրիայում, Շվեդիայում միա-
սին վերցրած։ 1955 թվականին ածխի հա-
նույթը մեր երկրում 14 անգամ գերազանցել
է 1913 թվականի մակարդակը։ Այժմ մենք
ավելի շատ ածուխ ենք արտադրում, քան
Անգլիան և Ֆրանսիան միասին վերցրած։
Միայն 5-րդ հնգամյակի տարիներին նավթի
հանույթի աճը կազմել է 33 միլիոն տոննա,
որը գերազանցում է Սովետական իշխանու-
թյան բոլոր տարիների հանույթը։ Վեցերորդ
հնգամյակի միայն մեկ տարվա նավթի հա-
նույթի աճը ավելին կլինի, քան եղել է նա-
խառևոլյուցիոն Ռուսաստանի ամբողջ հա-
նույթը։

Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1913



թվականի համեմատությամբ ավելացել է 100
անգամ։ Այժմ սովետական էլեկտրակայան-
ները օրական արտադրում են այնքան էլեկ-
տրաէներգիա, որքան երկիրը տվել է ամբողջ
1920 թվականի ընթացքում։

1955 թվականին ՍՍՌՄ-ը ավելի էլեկտրա-
էներգիա է արտադրել, քան Անգլիայի,
Ֆրանսիայի, Շվեդիայի, Դանիայի էլեկտրա-
կայանները միասին վերցրած։ Վեցերորդ
հնգամյակի տարիներին կկառուցվեն 400
հզոր էլեկտրակայաններ։

Իրագործելով Կոմունիստական պարտիայի
XX համագումարի որոշումները, սովետա-
կան ժողովուրդը 1956 թվականին մեծ հա-
ջողությունների է հասել ժողովրդական տըն-
տեսության բոլոր ճյուղերի զարգացման փոր-
ծում, նոր առաջընթաց քայլ կատարելով
կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի
ամրապնդման ճանապարհին։ Արդյունաբե-
րական արտադրանքի արտադրության տարե-
կան պլանը 1956 թվականին կատարվել է 102
տոկոսով։ Ամբողջ արդյունաբերության հա-
մախառն արտադրանքը 1955 թվականի հա-
մեմատությամբ աճել է 11,4 տոկոսով, այդ
թվում արտադրամիջոցների արտադրությունը
ավելի քան 11 տոկոսով, սպառման առար-
կաների արտադրությունը՝ ավելի քան 9,4

տոկոսով: 1956 թվականին մեր երկիրն արտադրել է 35,8 միլիոն տոննա չուգուն, 48,6 միլիոն տոննա պողպատ, 38,7 միլիոն տոննա գլանվածք, 429 միլիոն տոննա ածուխ, 83,8 միլիոն տոննա նավթ, 192 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Ամբողջ արտադրության աճը և կատարելագործումը ՍՍՌՄ-ում տեղի է ունենում տեխնիկական անընդհատ պրոգրեսի հիման վրա: Մեզ մոտ հատկապես բարձր տեմպերով է զարգանում մեքենաշինությունը, որի արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ ավելացել է 5 անգամ, իսկ 1913 թվականի համեմատությամբ՝ 180 անգամ: Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը 6-րդ հնգամյակում, 1955 թվականի համեմատությամբ, ավելացվելու է 80 տոկոսով:

1956 թվականին մշակվել և պատրաստվել է մեքենաների ու սարքավորումների հազարից ավելի նոր տիպեր, արմատավորվել են մոտ 1.500 ավտոմատ, հոսքային և կոնվեյերային գիծ, արդյունաբերությունը յուրացրել է մեքենաների, սարքավորումների, գործիքների և նյութերի ավելի քան 250 նոր տեսակների սերիական արտադրությունը: Կապիտալ ներդրումների ծավալը 1956 թվականին կազմել է 186 միլիարդ ռուբլի:



Նոր շինարարության, արդյունաբերական շատ ձեռնարկությունների ընդլայնման ու վերականգնման շնորհիվ է՛լ ավելի է ամրապնդվել նյութա-տեխնիկական բազան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում: 1956 թվականին գործարկվել է ավելի քան 800 պետական արդյունաբերական նոր, խոշոր ձեռնարկություն:

Կույբիշևի հիդրոէլեկտրակայանում շարք է մտել 11 ագրեգատ, գործարկվել է Կույբիշև—Մոսկվա էլեկտրահաղորդման բարձրավոլտ գիծը: Գործարկվեցին Իրկուտսկի հիդրոկայանի առաջին ագրեգատները, որի շնորհիվ Արևելյան Սիբիրի արդյունաբերությունը ստացավ էլեկտրաէներգիայի մի հուժկու աղբյուր: Ապահովվել է Գորկու և Կախովկայի հիդրոէլեկտրակայանների նախագծային լրիվ կարողությունը, զգալի աշխատանքներ են կատարվել Բրատսկի, Ստալինգրադի, Նովոսիբիրսկի, Բուխտարմայի հիդրոէլեկտրակայանների կառուցման ասպարեզում: Մի շարք խոշոր հիդրոէլեկտրակայաններ կառուցվեցին Ուզբեկստանում, Տաջիկստանում, Վրաստանում, Հայաստանում և երկրի այլ շրջաններում:

Ժամկետից մեկ տարի շուտ շարք մտավ Ստալինոպոլ—Մոսկվա գազամուղի առաջին

հերթը և այլն, գործարկվեցին մեծ թվով հացի, կաթի, յուղի-պանրի գործարաններ, մսի կոմբինատներ, սառցարաններ և թեթև ու սննդի արդյունաբերության այլ ձեռնարկություններ։

1956 թվականին քաղաքային բնակչությունն իր միջոցներով և պետական վարկի օգնությամբ կառուցել է 36 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, իսկ գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան՝ մոտ 700 հազար բնակելի տուն։

Սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման և դեպի կոմունիզմ սովետական ժողովրդի հաջող առաջընթացի վիթխարի հեռանկարներ է բացում ժողովրդական տնտեսության զարգացման 1957 թվականի պետական պլանը։ Երկրի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի աճը 1957 թվականին անցյալ տարվա համեմատությամբ ավելանում է 7,1 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը 7,8 տոկոսով, սպառման միջոցներինը՝ 5,9 տոկոսով։

Նախատեսված է 1957 թվականին արդյունահանել 446,2 միլիոն տոննա ածուխ, նավթի հանույթը հասցնել 97 միլիոն տոննայի,



չուգունի ձուլումը՝ 38,1 միլիոն տոննայի, պողպատինը՝ 51,5 միլիոն տոննայի, գլանվածքինը՝ 39,5 միլիոն տոննայի, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 211,2 միլիարդ կիլովատ-ժամի։ Աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ նախատեսվում է ավելացնել 5,4 տոկոսով, շինարարության մեջ՝ 8,5 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ընթացիկ տարում պետք է ստացվի ամբողջ արդյունաբերական արտադրանքի աճի մոտ 80 տոկոսը։

1957 թվականի պլանում պետական կապիտալ ներդրումների ծավալը նախատեսվում է 175 միլիարդ ռուբլու չափով, որը թույլ կտա լուծելու ժողովրդական տնտեսության զարգացման մի շարք կարևոր խնդիրներ։ Հատկապես լայն թափ է ստանալու բնակարանային շինարարությունը։ Պետական կապիտալ ներդրումների, ինչպես նաև պետական վարկի օգնությամբ բնակչության միջոցներով կառուցվելու է 46 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, կամ 28 տոկոսով ավելի, քան 1956 թվականին։

ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշմանը համապատասխան ՍՍՌՄ Գերա-

գույն Սովետի առաջիկա սեսիայի քննարկմանն է մտցված «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» հարցը։ Այդ կապակցությամբ ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսները հրապարակվել են մամուլում և դրվել են համաժողովրդական լայն քննարկման, որպեսզի կարծիքների փոխանակման, մեզանում կուտակված փորձի բազմակողմանի հաշվառման հիման վրա մշակվեն առավել նպատակահարմար, կատարյալ ձևեր։

Պարտիան միշտ հիշել է Լենինի այն ցուցումը, որ սոցիալիստական տնտեսավարման հիմնական սկզբունքը դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքն է, որը հնարավորություն է տալիս տնտեսության կենտրոնացված պետական ղեկավարումը ճիշտ զուգակցել արտադրության կառավարմանն անմիջականորեն մասնակցող աշխատավոր մասսաների ստեղծագործական ակտիվության առավելագույն զարգացման հետ, տեղական օրգանների նախաձեռնության զարգացման հետ և ժողովրդատնտեսական պլանների կատարման համար նրանց պատասխանատվության բարձրացման հետ։

Այժմ ՍՍՌՄ-ում կան ավելի քան 200 հա-



զար պետական ձեռնարկություններ ու 100 հազար կառույցներ, որոնք տեղավորված են մեր լայնածավալ Երկրի տարբեր շրջաններում։ Այդ պայմաններում դժվար է մեկ մինիստրությունից կամ գերատեսչությունից իրագործել դրանց կոնկրետ և օպերատիվ ղեկավարումը։ Ճյուղային մինիստրությունների ու գերատեսչությունների միջոցով ղեկավարելու գոյություն ունեցող ձևերի պայմաններում առաջ էին գալիս բազմաթիվ գերատեսչական պատնեշներ, խախտվում էր տարբեր ճյուղերի ձեռնարկությունների արտադրական նորմալ կապերը, ուռճանում կառավարչական ապարատը իր բազմաստիճան կառուցվածքով, որը շատ դեպքերում հանգեցնում էր մասնագետների զգալի մասի ոչ-ռացիոնալ օգտագործմանը և ղեկավարման գրասենյակային մեթոդների տարածմանը։

Արդյունաբերության և շինարարության կառավարման նախկին ձևերից անհրաժեշտ է անցնել տերիտորիալ սկզբունքով կառավարելու նոր, ավելի ճկուն ձևերի, ղեկավարման ծանրության կենտրոնը փոխադրել տեղերը, ավելի մոտեցնել ձեռնարկություններին, նորակառույցներին։ Նոր պայմաններում անչափ աճելու է պետական և տեղական պլանային օրգանների դերը, զգալիո-

րեն բարելավվելու է հաշվառման և վերա-
հսկողության օրգանների գործունեությունը։
Թեզիսներում մեծ ուշադրություն է նվիր-
վում ռեսպուբլիկաների իրավունքների հե-
տագա ընդլայնմանը և տնտեսության կառա-
վարման գործում նրանց դերի բարձրացմա-
նը։ Այդ հանգամանքը թույլ կտա ավելի ա-
րագ լուծել էկոնոմիկայի կոմպլեքսային
զարգացման հարցերը այս կամ այն տնտե-
սական շրջանում, է՛լ ավելի կամրապնդի
ժողովուրդների բարեկամությունը, է՛լ ավելի
արագ կաճեն բոլոր ազգությունների կադ-
րերը։

Ընկ. Խրուշչևի զեկուցման թեզիսները Սո-
վետական պետության հզորության հետագա
բարձրացման, սոցիալիստական էկոնոմիկա-
յի, ժողովրդական մասսաների կուլտուրայի
ու բարեկեցության նոր ծաղկման նկատ-
մամբ Կոմունիստական պարտիայի և Սովե-
տական կառավարության հոգատարության
նոր դրսևորումն է։

***

Համաժողովրդական տոնը՝ Մայիսի 1-ը
գյուղատնտեսության զարգացման գործում
ձեռք բերած լուրջ հաջողությունների, քաղա-
քական ու աշխատանքային ակտիվության



պայմաններում է դիմավորում կոլտնտեսա-
յին գյուղացիությունը։
Վերջին տարիներին պարտիան ու կառա-
վարությունը մի շարք միջոցառումներ իրա-
գործեցին գյուղատնտեսության վերելքի ուղ-
ղությամբ։ Առանձնապես կարևոր նշանակու-
թյուն ունեցան խամ ու խոպան հողերի յու-
րացման, կոլտնտեսությունները և ՄՏ կա-
յանները ղեկավարների ու մասնագետների
կադրերով ամրապնդելու, գյուղատնտեսու-
թյան պլանավորման նոր կարգի, գյուղատըն-
տեսական մթերքների մթերման ու գնման
գների բարձրացման, կոլտնտեսականների
ամենամսյա ավանսավորման մասին և մյուս
որոշումները։

Իրականացնելով մեր պարտիայի պատ-
մական որոշումները, կոլտնտեսականները և
կոլտնտեսուհիները, սովխոզների ու ՄՏԿ-
ների աշխատողները հսկայական աշխա-
տանք կատարեցին գյուղատնտեսության բո-
լոր ճյուղերի վերելքի գործում։
1956 թվականին նոր խոշոր հաջողու-
թյուններ ձեռք բերվեցին հացահատիկի, ա-
նասնաբուծական մթերքների, բամբակի,
շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարե-
ղենի և գյուղատնտեսական մյուս մթերքների
արտադրության ավելացման ասպարեզում։

1956 թվականին հացահատիկի համախառն բերքը (շտեմարանի բերքը) 1955 թվականի համեմատությամբ ավելացավ մոտ 20 տոկոսով և շատ ավելի բարձր էր Երկրի ամբողջ պատմության ընթացքում, այդ թվում նաև առավել բերքատու 1937, 1940 և 1952 թվականներին շտեմարան հանձնված բերքից:

Հացահատիկի արտադրությունն ավելացնելու գործում խոշորագույն ավանդ եղավ խոպան ու խամ հողերի յուրացումը: Բացառիկ կարճ ժամկետներում յուրացվեցին 35,5 միլիոն հեկտար նոր հողեր: Սովետական մարդկանց ազնիվ աշխատանքն ըստ արժանվույն հատուցվեց: 1956 թվականին մեր երկիրն այնպիսի բերք ստացավ, որը թույլ տվեց մթերել և պետական շտեմարանները լցնել 3 միլիարդ 300 միլիոն փութ հացահատիկ: Դա մեր սոցիալիստական գյուղատնտեսության մեծ հաղթանակն է:

Մեծ է սովխոզների դերը հացահատիկի արտադրության գործում: Անցյալ տարի սովխոզները հանձնեցին 933 միլիոն փութ հաց, որն ավելի է, քան հանձնել էին նախորդ երեք տարում: Երկրում ավելացել է բամբակի, արևածաղկի և մյուս տեխնիկական կուլտուրաների, ինչպես նաև կարտոֆիլի համախառն բերքը: Ընդ որում կարտոֆիլի արտա-



դրությունը ավելացել է 32 տոկոսով, բանջարեղենինը՝ 21 տոկոսով, բամբակինը՝ 14 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 1,4 անգամ, արևածաղկինը՝ 1,5 անգամ:

Ավելացել է մթերատու անասունների բոլոր տեսակների գլխաքանակը: Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1955 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1956 թվականի հոկտեմբերի մեկը ավելացել է 3,3 միլիոնով, այդ թվում կովերինը՝ 1,7 միլիոնով, խոզերի գլխաքանակը՝ 4,2 միլիոնով և ոչխարներինը՝ 4,2 միլիոնով:

Կոլտնտեսություններում կաթի արտադրությունը նախորդ տնտեսական տարվա համեմատությամբ ավելացել է 32 տոկոսով, իսկ վերջին երեք տարում՝ գրեթե 2 անգամ, մեկ կովի միջին կաթնատվությունը նախորդ տարվա համեմատությամբ ավելացել է 27 տոկոսով: Կաթի արտադրությունը սովխոզներում վերջին 3 տարում ավելացել է 35 տոկոսով: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդհանուր աճը 1956 թվականին ապահովեց հացահատիկի, բամբակի, կարտոֆիլի, մսի, կաթի, ձվի և մյուս մթերքների պետական մթերումների ու գնումների զգալի ավելացումը:

1956 թվականին մթերվեց ու գնվեց 481

հազար տոննայով ավելի բամբակ, 2,9 մի-
լիոն տոննայով ավելի կարտոֆիլ, 3,8 միլիոն
տոննայով ավելի կաթ, 322 հազար տոննա-
յով ավելի միս, 356 միլիոնով ավելի ձու
և 15 հազար տոննայով ավելի բուրդ, քան
1955 թվականին։

Մանր ինդուստրիայի և նրա սիրտը հան-
դիսացող մեքենաշինության զարգացումը
հնարավորություն տվեցին գյուղատնտեսու-
թյունը հագեցնել ժամանակակից տեխնիկա-
յով։ Եթե Վ. Ի. Լենինը Սովետական իշխա-
նության առաջին տարիներին երազում էր
100.000 տրակտորի մասին, ապա 1955 թը-
վականին մեր երկրի դաշտերում աշխատում
էին 1 միլիոն 439 հազար տրակտոր (15-ու-
ժանոցի վերածած), 338 հազար հացահա-
տիկային կոմբայն, 544 հազար բեռնատար
ավտոմոբիլ և միլիոնավոր գյուղատնտեսա-
կան այլ մեքենաներ։ 1956—1960 թ. թ. գյու-
ղատնտեսությունը կստանա 1 միլիոն 650
հազար տրակտոր, որը 275 հազարով ավել
է, քան ստացել է նախորդ 4 հնգամյակնե-
րին, 560 հազար հացահատիկային կոմբայն,
կամ 55 հազարով ավելի, քան եղել է վերջին
25 տարիներին, 250 հազար եգիպտացորեն
և սիլոս հավաքող մեքենաներ և այլն։

Մեծ և բարդ խնդիրներ են կանգնած մեր



գյուղատնտեսության առջև։ Չնայած նրան, որ գյուղատնտեսության մեջ մեր ունեցած դժվարությունները հիմնականում հաղթահարված են և այժմ այն տարեցտարի ավելի ու ավելի շեշտակի վերելք է ապրում, սակայն մենք չենք կարող բավարարվել ձեռք բերածով և չտեսնել այն թերությունները, որոնք դեռ հաղթահարված չեն և խանգարում են նոր հաջողությունների հասնել։

1957 թվականը, ինչպես ասված է գյուղատնտեսության աշխատողներին ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կոչի մեջ, պետք է դառնա գյուղատնտեսական արտադրության նոր, ավելի հզոր վերելքի տարի։ Ընթացիկ տարում պետությունը մեծ օգնություն է ցույց տալու գյուղատնտեսությանը։ ՄՏ կայանները և սովխոզները կստանան 145 հազար տրակտոր, 135 հազար հացահատիկային կոմբայն և այլ տեխնիկա, բազմաթիվ որակյալ կադրեր։

❊❊❊

Ժողովրդական տնտեսության զարգացման և ամենից առաջ ծանր ինդուստրիայի զարգացման գործում ձեռք բերված հաջողությունների հիման վրա անշեղորեն բարձրա-

նում է մեր ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։

ՍՄԿԿ XX համագումարից հետո այդ ասպարեզում իրականացվեցին մի շարք խոշոր միջոցառումներ, մտցված է կենսաթոշակների նոր օրենքը, որն ապահովեց աշխատավորների կենսաթոշակների զգալի բարձրացումը, ավելացվեց ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը, միջնակարգ և բարձրագույն դպրոցներում վերացվեց ուսման վարձը, կանանց համար երկարացվեցին հղիության և ծննդաբերության արձակուրդները, նախահանգստյան և նախատոնական օրերին կրճատվեց աշխատանքային օրը, կրճատված աշխատանքային օր սահմանվեց դեռահասների համար, ածխարդյունաբերության մեջ իրականացվում է անցումը կրճատ աշխատանքային օրվա։

Գյուղատնտեսության մեջ բարձրացվել է շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարեղենի, մրգերի և գյուղատնտեսական մի շարք այլ մթերքների մթերման գները։

Պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցում կարևորագույն պարենային ապրանքների վաճառքը 1955 թվականի համեմատությամբ 1956 թվականին զգալիորեն ավելա-



ցել է։ Ավելացել է նաև հիմնական արդյունաբերական ապրանքների վաճառքը։

1957 թվականին ժողովրդատնտեսական պլանի տարբերիչ գիծը կայանում է նրանում, որ ծանր ինդուստրիայի հաջողությունների բազայի վրա նախատեսվում է ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելի բարձր տեմպեր, քան առաջ։

1957 թվականին լուրջ զարգացում են ստանալու թեթև, տեքստիլ և սննդի արդյունաբերությունը։

Այսպես օրինակ, վուշի գործվածքեղենի արտադրությունը ավելացվելու է 10,2 տոկոսով, բամբակե սպիտակեղենինը՝ 10 տոկոսով, հագուստի գործվածքեղենը՝ 12 տոկոսով, շաքարի արտադրությունը՝ 9,5 տոկոսով, վերամշակվելու է 19,5 միլիոն տոննա կաթ և այլն։

1957 թվականի ազգային եկամուտը կաճի 8 տոկոսով, զգալիորեն կավելացվեն բանվորների և ծառայողների աշխատավարձի ընդհանուր ֆոնդը, կոլտնտեսականների եկամուտները։ Բնակչությունը զանազան վճարումների ձևով պետությունից կստանա 192 միլիարդ ռուբլի։ Բնակչության դրամական եկամուտների աճին համապատասխան, պետական և կոոպերատիվ առևտրի մանրա-

ծախ ապրանքաշրջանառությունը անցյալ
տարվա համեմատությամբ 1957 թվականին
ավելացվում է 57 միլիարդ ռուբլով։ Ապրան-
քաշրջանառության նման վիթխարի աճ մեր
երկրում չի եղել երբեք։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել
սոցիալիստական կուլտուրայի բոլոր բնա-
գավառներում։ Ցարական Ռուսաստանը բը-
նակչության գրագիտությամբ բռնում էր Եվ-
րոպայում ամենավերջին տեղերից մեկը։

Խոսելով երկրում գրագիտության տարած-
ման հեռանկարների մասին, լիբերալ նա-
րոդնիկության օրգան «Նեդելյա» թերթը 1893
թվականին գրել է, որ ծայրահեղ դեպքում ա-
մենաքիչը կպահանջվի 250 տարի, որպեսզի
Ռուսաստանը դառնա գրագետ։ Բայց սովե-
տական կարգերի պայմաններում այդ խըն-
դիրը լուծվեց ամենակարճ ժամկետում։

Մեր երկրում 1956 թվականին գործում էր
213 հազար դպրոց։ 1955—1956 ուս. տարում
մեզ մոտ աշխատում էին 1 միլիոն 733 հա-
զար ուսուցիչներ, 1955—56 ուս. տարում
միջնակարգ դպրոցներում ընդգրկված էր 35
միլիոն աշակերտ։ Անցյալ տարի կազմա-
կերպված գիշերօթիկ դպրոցներում սովորում
են 56 հազար երեխա։



1914—1915 թվականներին Ռուսաստանում կար 91 բուհ, որտեղ սովորում էր 112 հազար ուսանող, 295 միջնակարգ մասնագիտական հաստատություններում սովորում էր 36 հազար մարդ։

1955—1956 թվականներին ՍՍՌՄ-ում գործում էր 765 բուհ, 1 միլիոն 867 հազար ուսանողով, 3.753 տեխնիկում և միջնակարգ մասնագիտական հաստատություն՝ մեկ միլիոն 960 հազար 400 սովորողներով։

1955—1956 ուս. տարում մեր երկրում սովորողների թիվը 50 միլիոն մարդուց ավելի էր, այլ կերպ ասած ներկայումս սովետական յուրաքանչյուր չորս մարդուց մեկը սովորում է։ ՍՍՌՄ բուհերը ժողովրդական տնտեսությանը ավելի շատ ինժեներներ, ագրոնոմներ, բժիշկներ, զոոտեխնիկներ և այլ մասնագետներ են տալիս, քան որևէ այլ երկրում։ Բարձրագույն կրթության զարգացման տեմպով ու մակարդակով ՍՍՌՄ-ի հետ չի կարող համեմատվել Եվրոպայի ոչ մի կապիտալիստական երկիր։ Եվրոպայի 14 խոշոր կապիտալիստական երկրներում, միասին վերցրած, 2 անգամ պակաս ուսանող է սովորում, քան ՍՍՌՄ-ում։ Եթե մինչև ռևոլյուցիան երկրի արևելյան շրջաններում

կար ընդամենը 4 բուհ, ապա 1955 թվականին նրանց թիվը հասնում էր 200-ի։

Մինչ ռևոլյուցիոն Ռուսաստանում եղած 289-ի փոխարեն մեր երկրում այժմ գործում է 2.797 գիտական հիմնարկություն, որտեղ նախառևոլյուցիոն 10.000 գիտաշխատողների փոխարեն ներկայումս աշխատում են 240 հազար գիտաշխատողներ։

Տարեցտարի մեր երկրում ընդլայնվում է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը։ Այժմ մենք ունենք մոտ 400 հազար գրադարան, 130 հազար ակումբ, 63.000 կինոսարքավորում, 860 թանգարան, 513 թատրոն և բազմաթիվ կուլտուր-լուսավորական հիմնարկներ։

1957 թվականի պլանով ժողովրդական կրթության, գիտության զարգացման, առողջապահության, սոցիալական ապահովության և սոցիալ-կուլտուրական այլ միջոցառումների համար նախատեսված է 188,2 միլիարդ ռուբլի։

Մայիսի 1-ը մեծ հաջողություններով է դիմավորում նաև վերածնված հայ ժողովուրդը։ Սովետական Միության ժողովուրդների եղբայրական համերաշխ ընտանիքում, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության օգնության շնորհիվ ծաղկում



ու բարգավաճում է Հայկական ռեսպուբլիկան։

Հայաստանի աշխատավորները ոգեշնչված ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներով 1956 թվականին նոր հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում։ Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող արդյունաբերությունը համախառն արտադրանքի արտադրության պլանը 1956 թվականին կատարել է 104 տոկոսով։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1955 թվականի համեմատությամբ, աճել է 10 տոկոսով, գերակատարվել է ծանր արդյունաբերության արտադրանքի կարևորագույն շատ տեսակների՝ էլեկտրաէներգիայի, ռաֆինացված պղնձի, ալյումինի, կաուստիկ սոդայի, ավտոդողերի, ամոնիակի, զոդման տրանսֆորմատորների, գեներատորների արտադրության պլանը և այլն։

Կապիտալ ներդրումների ծավալը 1956 թվականին 1955 թվականի համեմատությամբ ավելացել է 20 տոկոսով, իսկ բնակարանային շինարարության մեջ՝ 23 տոկոսով։ Անցյալ տարի կառուցվել ու շահագործման են հանձնվել 200 հազար քառակուսի

մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Գյուղերում կառուցվել է 8,4 հազար բնակելի տուն։ 1956 թվականին շահագործման են հանձնվել Արզնու հիդրոէլեկտրակայանի երկու ագրեգատները, գործարկվել է Երևանի հեռուստատեսական կենտրոնի առաջին հերթը։

Գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ պարտիայի և կառավարության որոշումների կենսագործման շնորհիվ, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները 1956 թվականին ավելացրին բանջարեղենի, խաղողի, մսի, կաթի, բրդի ու գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը և դրանց պետական մթերումներն ու գնումները։ Կատարվել ու գերակատարվել են պետությանը հացահատիկ, միս, կաթ, բուրդ, բամբակ, բանջարեղեն, խաղող և գյուղատնտեսական այլ մթերքներ հանձնելու պարտավորությունները։ Պետական մթերումները և գնումները 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացել են բանջարեղենինը՝ 30 տոկոսով, պտուղներինը՝ 1,7 անգամ, խաղողինը՝ 1,8 անգամ։

Ավելացել է նաև մթերատու անասունների գլխաքանակը։ Վերջին երեք տարում կովերի գլխաքանակն ավելացել է 25 տոկոսով, ոչ-



խարներինը՝ 15 տոկոսով, կաթի արտադրությունը՝ 30 տոկոսով, մսինը՝ 11 տոկոսով, բրդինը՝ 15 տոկոսով։

Գյուղատնտեսական արտադրության ավելացման և գյուղատնտեսական մթերքների պետական մթերման ու գնման գների բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացել են 14 տոկոսով, իսկ 1952 թվականի համեմատությամբ՝ ավելի քան 1,5 անգամ։

1957 թվականին ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը, 1956 թվականի համեմատությամբ աճելու է 8 տոկոսով։ Ինչպես նախորդ տարիներին, այնպես էլ այս տարի առավելապես զարգանալու են ծանր ինդուստրիայի ճյուղերը, առաջին հերթին՝ հաստոցաշինությունը, մեքենաշինությունը, գործիքաշինությունը, էլեկտրատեխնիկական և շինանյութերի արդյունաբերությունը։ Զգալի չափով ավելացվելու է գունավոր մետաղների հանքաքարի հանույթն ու վերամշակումը, պղնձի և մոլիբդենի կոնցենտրատների թողարկումը։ Քիմիական արդյունաբերության արտադրանքը ավելացվելու է 9 տոկոսով։

Մոտ ժամանակներում ավարտվելու է

Արզնիի հիդրոէլեկտրակայանի 3-րդ ագրեգատի մոնտաժը, գործարկվելու է Այրումի հիդրոկայանը և Ջերմուկի կայանի 3-րդ ագրեգատը։ Քաղաքների և գյուղերի էլեկտրամատակարարումը բարելավելու նպատակով շահագործման են հանձնվելու էլեկտրահաղորդման մի շարք բարձրավոլտ գծեր։ Հատկապես ուժեղ է զարգանում մեքենաշինությունը։ Եթե ամբողջ արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը պետք է ավելանա 8 տոկոսով, ապա մեքենաշինության, հաստոցաշինության, գործիքաշինության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի թողարկումը 1957 թվականին կավելանա ավելի քան 24 տոկոսով։

Հայէլեկտրո գործարանի արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացվելու է 28 տոկոսով, էլեկտրալամպերի արտադրանքը՝ 62 տոկոսով։ Բուռն թափով զարգանում է արդյունաբերության երիտասարդ ճյուղերից մեկը՝ գործիքաշինությունը, որի արտադրանքը անցյալ տարվա համեմատությամբ կրկնապատկվելու է։ Երևանում թողարկվելու է էլեկտրոնային հաշվիչ-մաթեմատիկական առաջին մեքենան։

1957 թվականի պլանում նախատեսվում է,



թեթև և սննդի արդյունաբերության հետագա զարգացում։ Բամբակի գործվածքների արտադրությունը աճելու է 11 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 13 տոկոսով, բրդինը՝ 14 տոկոսով, կոշիկի արտադրությունը 21 տոկոսով։ Հատուկ ուշադրություն է դարձվելու բնակչության մեջ բարձր պահանջարկ ունեցող ապրանքների, մանկական հագուստեղենի և կոշկեղենի արտադրությանը։

1957 թվականին շահագործման կհանձնվեն Երևանի Հացի գործարանը, Բիսկվիտի ֆաբրիկան, Կաթի կոմբինատը, Կոտայքի Շամպայն գինիների գործարանը, Վեդու գինեգործարանը, Արզնիի ապակետարայի և Ջերմուկի հանքային ջրերի գործարանների երկրորդ հերթերը։

Պարտիան խնդիր է դրել՝ ապահովել ռեսպուբլիկայի գյուղի աշխատավորներին սեփական արտադրության հացով։ Այդ խնդրի լուծման հիմնական աղբյուրը բերքատվության բարձրացումն է։ 1957 թվականին հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի ամբարային միջին բերքատվությունը պետք է հասցնել 11—12 ցենտների, իսկ 1960 թվականին՝ 13—14 ցենտների։

Բանջարեղենի և կարտոֆիլի նկատմամբ բնակչության պահանջները բավարարելու համար զգալիորեն ավելացվում է դրանց արտադրությունը։ 1957 թվականի պլանի համաձայն կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները նախատեսել են բանջարեղենի արտադրությունը հասցնել 143 հազար տոննայի, կարտոֆիլինը՝ 249 հազար տոննայի։

1957 թվականին գյուղատնտեսական մթերքների մթերումների և գնումների ծավալը անցյալ տարվա համեմատությամբ ավելանալու է բամբակ՝ 20 տոկոսով, ծխախոտ՝ 30,2 տոկոսով, կաթ՝ 20,3 տոկոսով։ Ավելանալու է նաև կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի և ձվի մթերումները։ Այս տարի Միութենական կառավարության որոշմամբ մթերումների ասպարեզում մի շարք արտոնություններ են սահմանվել լեռնային շրջանների համար։ Կոլտնտեսություններում և սովխոզներում տնկվելու է 2.200 հեկտար խաղողի այգի, 1.400 հեկտար պտղի ու հատապտղի այգի և հիմնվելու է 320 հեկտար թթաստան, կատարվելու են նոր անտառատնկումներ 1800 հեկտար տարածության վրա։ Ոռոգելի հողերի տարածությունը 1957 թվականին ընդարձակվելու է 3.300 հեկտա-



րով, ջրովի է դարձվելու 4 հազար հեկտար արոտավայր Գեղամա լեռներում։ Զգալիորեն աճելու է սովխոզների տեսակարար կշիռը գյուղատնտեսության մթերքների արտադրության մեջ։ ՄՏ կայանները հագեցվելու են 400 տրակտորով և 263 կոմբայնով։

Կապիտալ շինարարության ընդհանուր ներդրումների ծավալը կազմում է 905 միլիոն ռուբլի, որը հիմնականում օգտագործվելու է արտադրությունն ընդարձակելու, կառուցվող ձեռնարկությունների շինարարությունն ավարտելու համար, ինչպես նաև բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարարության համար։ Հիմնականում ավարտվելու է Արզնիի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, ուժեղացվելու է Աթարբեկյանգէսի շինարարությունը, սկսվելու է Երևանի հիդրոկայանի շինարարությունը։ Սկսվելու է Լուսավանի խոշոր գործիքաշինական գործարանի կառուցումը, Չարբախի տրիկոտաժե ձեռնոցների ֆաբրիկան և դաշնամուրի ֆաբրիկան։

Պլանով նախատեսվող հատկացումները հնարավորություն կտան ընթացիկ տարում շահագործման հանձնել 171 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ՝ հաշվի առնելով նաև փո-

խանցիկ շինարարությունը, որը 80 տոկոսով ավելի է անցյալ տարվա համեմատությամբ։ Առողջապահական օբյեկտների շինարարության և կահավորման համար հատկացումները անցյալ տարվա համեմատությամբ ավելանում են 37 տոկոսով, դպրոցական շինարարությանը՝ 36 տոկոսով, կուլտուրայի և գիտության օբյեկտներինը՝ 69 տոկոսով։

Ծաղկում է Սովետական Հայաստանի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանում, ինչպես նաև եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում տեղի է ունեցել իսկական կուլտուրական ռևոլյուցիա։

1914 թվականին Հայաստանում գործում էր ընդամենը 459 դպրոց, որտեղ սովորում էր 34.700 աշակերտ և աշխատում էր 1100 ուսուցիչ։ Ներկայումս ռեսպուբլիկայի 1187 հանրակրթական դպրոցներում սովորում են մոտ 281 հազար 100 աշակերտ, աշխատում են 18 հազար 300 ուսուցիչ։ Հայաստանում բնակչության յուրաքանչյուր 10 հազար հոգուն 16 անգամ ավելի սովորող է ընկնում, քան Թյուրքիայում։ Բոլոր տեսակի դպրոցներում, ուսումնարաններում և տեխնիկումներում 1956—1957 ուստարում



սովորում է ավելի է քան 300 հազար մարդ, բարձրագույն ուսումնական հաստատություններում 20 հազար մարդ, տեխնիկումներում և մյուս մասնագիտական հաստատություններում՝ 16 հազար մարդ։ 1956 թվականին ռեսպուբլիկայի բուհերը և միջնակարգ մասնագիտական հաստատությունները ավելին 7 հազար երիտասարդ մասնագետներ։ Գիտական և գիտա-մանկավարժական գործունեությամբ զբաղվում են 2.616 գիտական աշխատող։

Անցյալ տարի ավելի քան 25 հազար երեխաներ ու դեռահասներ հանգստացել են ճամբարներում և մանկական սանատորիաներում, իսկ 23 հազար մարդ բուժվել են սանատորիաներում և հանգստյան տներում։

Աշխատավորների կուլտուրական սպասարկմանն են ծառայում 1662 գրադարանները, 1191 ակումբները, 20 թանգարանները, 10 թատրոնները, 369 կինոսարքավորումները։ 1957 թվականին է՛լ ավելի կբարելավվի աշխատավորների բարեկեցությունը։ Աշխատավարձի ընդհանուր ֆոնդը ավելանալու է 9 տոկոսով, ավելանալու են կոլտնտեսականների եկամուտները։ Միայն գյուղատնտեսական մի շարք մթերքների մթերման գների բարձրացման շնորհիվ կոլ-

տնտեսականները և կոլտնտեսությունները ստանալու են մոտ 185 միլիոն ռուբլու լրացուցիչ եկամուտ, աշխատավորներին վճարվելու է 158 միլիոն ռուբլի կենսաթոշակ և նպաստ։ Ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացման, ուսման վարձի վերացման և այլ արտոնությունների կապակցությամբ ռեսպուբլիկայի աշխատավորները կստանան 355 միլիոն ռուբլու լրացուցիչ օգուտ։



Գարնանային այս պայծառ օրերին աղբյուրի նման հորդում է մեր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը և ձեռներեցությունը։ Ծավալելով Մեծ Հոկտեմբերի 40-ամյակին նվիրված սոցիալիստական մրցությունը, մեր երկրի աշխատավորները պայքարում են երկրին ավելի շատ պողպատ և մեքենաներ, նավթ և ածուխ, հաց և միս, ժողովրդական սպառման ապրանքներ տալու համար։

Ամփոփելով ընթացիկ տարվա 4 ամսվա աշխատանքի արդյունքները, սովետական մարդիկ նոր, ավելի բարձր պարտավորություններ են վերցնում, պայքարում են 6-րդ հնգամյակի երկրորդ տարվա առաջադրանք-



ները ժամկետից շուտ կատարելու, Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը արժանավայել նվերներով դիմավորելու համար։

Կոմունիստական պարտիան ժողովրդի շահերից բացի այլ շահեր չունի։ Նա մշակել և համարձակ կերպով իրականացնում է բոլոր ազգությունների ու ժողովուրդների շահերին համապատասխանող քաղաքականություն, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի հետագա վերելքի, մեր երկրում կոմունիզմի կառուցման քաղաքականություն։

Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին Հայաստանի աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս և ակտիվորեն պաշտպանում են այդ քաղաքականությունը, ոչ մի ջանք չեն խնայում նրա կենսագործման համար։ Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին հայ ժողովուրդը հաստատակամորեն առաջ է ընթանում Կոմունիստական պարտիայի նշած ուղիով, նորանոր հաջողություններ ձեռք բերելով էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացման գործում, իր արժանի ավանդը մուծելով մեր Հայրենիքի ծաղկման, նրա հզորության հետագա ամրապնդման, մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։

Սովետական Միության հետ միասին մայիսմեկյան տոնակատարությունը մեծ խանդավառությամբ են դիմավորում սոցիալիզմի լագերի բոլոր երկրների աշխատավորները։ Սոցիալիզմի լագերը ամբողջ աշխարհի առաջ ցուցադրում է սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները քաղաքական, տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործում ձեռք բերած վիթխարի հաջողությունները։

Սոցիալիզմի լագերը Սովետական Միության գլխավորությամբ պետությունների ու ժողովուրդների հարաբերությունների նոր տիպար է, որի հիմքում ընկած են պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները, եղբայրական համագործակցությունը և փոխադարձ օգնությունը, իրավահավասարությունը և ազգային անկախությունը հարգելը։ Սոցիալիզմի լագերը միասնական ճակատով պայքարում է խաղաղության ու դեմոկրատիայի, ժողովուրդների անվտանգության ապահովման համար։

Կապիտալիստական երկրների աշխատավորները մայիսի 1-ը դիմավորում են դեմոկրատիայի, սոցիալիզմի, ազգային անկա-



խության համար նոր պատերազմի վտանգի դեմ մղվող պայքարում իրենց ուժերի մոբիլիզացման նշանաբանով։

Սովետական մարդիկ և աշխարհի բոլոր դեմոկրատական ուժերը քաջ գիտակցում են, որ միջազգային կարևորագույն պրոբլեմների կարգավորման, նոր պատերազմի վտանգը կանխելու գործում դեռևս լուրջ դժվարություններ կան, որ դրանց կարելի է հասնել համառ և լարված պայքարի միջոցով միայն։

Սովետական Միության և սոցիալիզմի լագերի երկրների մեծագույն հաջողությունները վճռական և անձնուրաց պայքարի են ոգեշնչում խաղաղության համար, իրենց իրավունքների, լավագույն կյանքի համար կապիտալի երկրների միլիոնավոր մասսաներին։

Մայիսմեկյան ցնծության օրը սովետական մարդիկ իրենց եղբայրական ողջույնն են հղում սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդներին, որոնք հաստատուն և վստահ կերպով առաջ են գնում սոցիալիզմի ուղիով։ Նրանք բոցավառ ողջույն են հղում նաև խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի համար պայքարող բոլոր երկրների աշխատավորներին։

———

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

Վ. ԲԶՆՈՒՆԻ

Սրանից 45 տարի առաջ, 1912 թվականի մայիսի 5-ին լույս տեսավ բոլշևիկյան «Պրավդա» թերթի առաջին համարը։ Դա բանվորական շարժման պատմության մեջ միակ մասսայական բանվորական թերթն էր։ Այդ նշանակալից օրն էլ հետագայում դարձավ սովետական մամուլի տրադիցիոն տոնը, որը նշվում է ամեն տարի։

Դեռևս Կոմունիստական պարտիայի կազմավորման շրջանում նրա մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը խոշոր նշանակություն էր տալիս բանվորական թերթի ստեղծմանը։ Լենինը այն ժամանակ թերթը համարում էր այն միակ միջոցը, որը պարտիան կապում է բանվորական ամենալայն մասսաների հետ, խոսում նրանց հետ նրանց հասկանալի լեզվով, որը քաղաքական-կազմակերպական աշխատանք է ծավալում մասսաների լայն շրջանում, համախմբում է բանվոր դասակարգին և աշխատավոր գյուղացիությա-



նը պարտիայի շուրջը՝ նրանց ցարիզմի դեմ գրոհի տանելու համար։ Հենց այդպիսի թերթ հանդիսացավ «Պրավդա»-ն։

Բոլշևիկյան «Պրավդա»-ն անգնահատելի ծառայություններ է մատուցել ու մատուցում պարտիային ու բանվոր դասակարգին։ Նա անհաշտ պայքար է մղել բոլոր նրանց դեմ, ովքեր փորձել են թուլացնել պարտիայի միասնությունն ու երկաթե կարգապահությունը, ջախջախիչ հարվածներ է հասցրել բոլոր տեսակի թշնամիներին։

Ամուր թելերով կապված լինելով աշխատավորական լայն մասսաների հետ, «Պրավդա»-ն իր էջերում մեծ տեղ էր տալիս նրանց նամակներին, ժամանակին արձագանքում նրանց հուզող հարցերին, քաղաքական, ագիտացիոն աշխատանք ծավալում, մերկացնում ցարիզմը։ «Պրավդա»-ն իր էջերում մեծ տեղ էր տալիս նաև գյուղացիության հարցին, գյուղացիությանը համարելով բանվոր դասակարգի միակ և ամենահուսալի դաշնակիցը ինքնակալությունը տապալելու և սոցիալիստական հասարակարգ կառուցելու գործում։

Ցարական կառավարությունը շարունակ հետապնդում էր «Պրավդա»-ին։ Երկու և կես տարվա ընթացքում նա ութ անգամ փակեց

այն, սակայն «Պրավդա»-ն շարունակում էր լույս տեսնել ամեն անգամ նոր անուններով՝ «Զա Պրավդու», «Պուտ Պրավդի», «Տրուդովայա Պրավդա» և այլն։

Ներկայումս «Պրավդա»-ն պարտիայի ղեկավարությամբ հսկայական աշխատանք է կատարում մեր երկրի աշխատավորության ուժերի մոբիլիզացման և նրանց կոմունիզմի կառուցման մեջ ակտիվորեն ներգրավելու գործում, պարտիայի և կառավարության որոշումների անշեղ կենսագործման գործում, միշտ բարձր պահելով լենինիզմի և ինտերնացիոնալիզմի դրոշը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո անցած ժամանակաշրջանում գնալով աճել, ամրապնդվել է սովետական մամուլը։ Ներկայումս մեր լայնածավալ Հայրենիքը պատած է պարբերական մամուլի՝ թերթերի և ամսագրերի խիտ ցանցով։ Այժմ մեր երկրում չկա մի մարզ, օկրուգ կամ շրջան, որը չունենա իր տպագրական օրգանը։ Անգամ առանձին խոշոր գործարաններ, սովխոզներ և կոլտնտեսություններ ունեն իրենց բազմատիրաժ թերթերը։

1955 թվականին ՍՍՌՄ-ում լույս է տեսել 7.246 թերթ, ավելի քան 48 միլիոն 700



հազար ընդհանուր տիրաժով։ Ներկայումս միայն «Պրավդա» թերթի մեկօրյա տիրաժը ավելի բարձր է, քան մինչև ռևոլյուցիոն Ռուսաստանում լույս տեսնող բոլոր թերթերի տիրաժը միասին վերցրած։ Այժմ մեզ մոտ հրատարակվում են ավելի քան 2.000 ամսագիր, պարբերական ժողովածուներ, բյուլետեններ և ագիտատորի բլոկնոտներ՝ 361 միլիոն 347 հազար տարեկան տիրաժով, որոնք լույս են տեսնում 51 լեզուներով։ Աննախընթաց ծավալ է ստացել գրքի հրատարակության գործը։ Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ-ում լույս է տեսել 1 միլիոն 268 հազար գիրք՝ 18 միլիարդ 200 միլիոն տիրաժով, 122 լեզուներով, ըստ որում, 86-ը Սովետական Միության ժողովուրդների լեզուներով։

Թերթերի, ամսագրերի և գրքերի հրատարակման գործը հսկայական զարգացում է ստացել նաև մեզ մոտ՝ Սովետական Հայաստանում։ Բավական է ասել, որ ներկայումս ռեսպուբլիկայում հրատարակվում են մոտ 50 անունից ավելի կենտրոնական, քաղաքային, շրջանային և բազմատիրաժ թերթեր, մեկ տասնյակից ավելի ամսագրեր ու բյուլետեններ, որոնց ընդհանուր տիրաժը հասնում է մի քանի հարյուր հազարի։ Չը-

տեսնված ծաղկման է հասել գրքի հրատարակումը։ Հայ ժողովուրդը ներկայումս լայն հնարավորություն ունի մայրենի լեզվով կարդալու ոչ միայն ռուսական արդի և կլասիկ գրողների, այլև գեղարվեստական գրականության համաշխարհային և մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։

Շարունակելով «Պրավդա»-ի հիանալի տրադիցիաները, սովետական մամուլը մեծ դեր է կատարում մասսաների գաղափարական-քաղաքական դաստիարակության, նրանց տեխնիկական ու կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզում։ Մեր մամուլը իր էջերում վեր է հանում, փառաբանում է սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունները, խրախուսում է նրանց հրաշալի բոլոր նախաձեռնությունները, նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունները, որոնք ուղղված են մեր Հայրենիքի հետագա հզորացմանը, նրա տեխնիկական ու տնտեսական պրոգրեսին, սովետական ժողովրդի բարօրության բարձրացմանը։ Վերջին շրջանում մեր պարբերական մամուլը լայն տեղ է տալիս առաջավոր փորձի փոխանակմանը և մասսայականացմանը։ Դրա



հետ միասին մամուլը բոլշևիկյան անողոք քննադատությամբ վեր է հանում մեր աշխատանքի տարբեր բնագավառներում դեռևս գոյություն ունեցող թերությունները, խարազանում, անարգանքի սյունին է գամում ծույլերին և հասարակական հանրօգուտ աշխատանք չկատարողներին։

Սովետական մամուլի մարտական խընդիրն է՝ աշխատավորական լայն մասսաներին ոտքի հանել պարտիայի 20-րդ համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների որոշումները կյանքում անշեղորեն կենսագործելու համար։ Պարտիան և կառավարությունը կարևոր միջոցառումներ են ձեռնարկել 6-րդ հնգամյակում է՛լ ավելի զարգացնել մեր երկրի ծանր արդյունաբերությունը, ընդարձակել լայն սպառման առարկաների արտադրությունը, մի նոր վճռական քայլ կատարել գյուղատնտեսության, մանավորապես անասնաբուծության զարգացման ասպարեզում՝ երկրում անասնաբուծական մթերքների առատություն ստեղծելու համար։ Պարտիան ու կառավարությունը լուրջ հոգատարություն են ցուցաբերում սովետական ժողովրդի կարիքների, նրա նյութական, կուլտուրական ու բնակարանային

պահանջները բավարարելու նկատառմամբ։ Այդ հոգատարությունն արտահայտվում է նրանում, որ կառավարությունը տարեցտարի ավելացնում է բյուջեում նախատեսված հատկացումները։

Այժմ, երբ լայն ծավալ է ստանում համաժողովրդական շարժումը՝ Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու համար, սովետական մամուլը պետք է լայնորեն լուսաբանի այդ շարժումը, մոբիլիզացնի աշխատավոր մասսաների բարձր խանդավառությունը պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները պատվով կատարելու համար։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՅԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, Երկեր, հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, Երկեր, հատոր 8, էջ 439—444, Հայպետհրատ, 1949։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կարմիր հրապարակում 1 մայիսի 1919 թ., Երկեր, հատոր 29, էջ 397—401, Հայպետհրատ, 1951։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Գորկու, Արզամասի, Կիրովի մարզերի, Մարիական, Մորդովական և Չուվաշական ԱՍՍՌ-ների գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում 1957 թվականի ապրիլի 8-ին Գորկի քաղաքում, տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի 10-ի համարում։

### 2. *ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Մեր բերբերի բնույթի մասին, *Երկեր, հատոր 28, էջ 106, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ինչից սկսել, *Երկեր, հատոր 5, էջ 11—25, Հայպետհրատ, 1948։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ*— Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *զեկուցման թեզիսներ, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 30-ի և 31-ի համարներում։*

### 3. *ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՆՈՐԱՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

Դեպի Մեծ Հոկտեմբերի քառասնամյակը: *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 19-ի համարում։*

ՀԱՄԿԿ-ի Նախագահությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի տոնակատարությունը նախապատրաստվելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 9-ի համարում։*



### 4. *ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու մասին, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, *ընդունված 1957 թվականի փետրվարի 14-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 16-ի համարում։*

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը՝ նոր պահանջների մակարդակին: *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 19-ին։*

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը վեցերորդ հնգամյա պլանը կազմելու աշխատանքների ավարտման մասին և 1956—1960 թ. թ. կոնտրոլ թվերի ու 1957 թվականի ժողովրդա-տնտեսական պլանի նրշգրտումների ուղղության մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի դեկտեմբերի 25-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ*— Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, զեկուցման թեզիսներ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 30-ի և 31-ի համարներում։*

### 5. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Դիմումը *կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների բանվորներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, սովետական և գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին ու բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 17-ի համարում։*

Ընկ. Ն. Ս. Խրուշչևի ճառը Ուզբեկստանին Լենինի շքանշան հանձնելու կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 15-ի համարում։*

Ընկ. Ն. Ա. Բուլգանինի ճառը Տաջիկական ՍՍՌ-ին Լենինի շքանշան հանձնելու կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 22-ի համարում։*

Ընկ. Ա. Ի. Միկոյանի ճառը Թուրքմենստանին Լենինի շքանշան հանձնելու կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 23-ի համարում։*

Գերազանց նախապատրաստվենք և անցկացնենք գարնանացանը, վեցերորդ հնգամյակի երկրորդ տարում անենք բարձր բերք, Բասարգեչարի շրջանի կոլտնտեսականների, մեխանիզատորների ու մասնա-



գետների Դիմումը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 11-ի համարում։*

### 6. ՊԱՅՔԱՐԵՆՔ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՀԱՐՅՈՒՐ ՀԵԿՏԱՐ ՀՈՂԱՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆԻՑ ԱՎԵԼԻ ՇԱՏ ՄԻՍ, ԿԱԹ, ԲՈՒՐԴ ԵՎ ԱՅԼ ՄԹԵՐՔՆԵՐ ՍՏԱՆԱԼՈՒ ՀԱՄԱՐ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1957 թվականին պետությանը հանձնենք երկու անգամ շատ միս և մեկ ու կես անգամ շատ կաթ։ *Սմոլենսկի մարզի կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների Դիմումը Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 7-ի համարում։*

Ընկ. Ն. Ս. Խրուշչևի ճառը Կրասնոդարի երկրամասի գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 13-ի համարում։*

Ընկ. Ն. Ս. Խրուշչևի ճառը Կենտրոնական ոչ-սևահողային գոտու մարզերի գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 3-ի համարում։*

Գործի դնել մսի ու կաթի արտադրության ավելացման բոլոր միջոցները։ Ընկ. Ն. Ս. Խրուշչևի ճառը Վորոնեժում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 7-ի համարում։*

Ընկ. Ն. Ս. Խրուշչևի ճառը Գորկու, Արզամասի, Կիրովի մարզերի, Մարիական, Մորդվական և Չուվաշական ԱՍՍՌ-ների գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 10-ի համարում։*

### 7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՀԶՈՐ ՊԱՏՎԱՐՆ Է

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրության հայտարարությունը Եվրատոմ և «Ընդհանուր շուկա» ստեղծելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը Նորվեգիայի պրեմյեր-մինիստր էյնար Գերհարդսենին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 27-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը Դանիայի պրեմյեր-մինիստր Խ. Կ. Հանսենին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 2-ի համարում։*

ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստրության հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 2-ի համարում։*

ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստրությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 2-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ